1916

№ 9.—Փետրուարի 21

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ՝ տարեկան 4** *ռուբլի,* **կէս տարուան 2** *ռ.* **50** *կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ռ.,* **կէս տարուան 2** *ռ.։ Արտասահման՝* **տարեկան 5** *ռ.* **կէս տարուան 3** *ռ.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտատրադեան հրապար. № 7.* **Հեռախօս № 29.**

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.*

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վէպակներ, պատմուածքներ. ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն, 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ։ 5. Պատարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած է 16 մեծադիր երեսներից և լոյս կըտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՉԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Ալթունեան Գէորգ, Աղասարեան Բուզդան (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապէլ, Դաւթեան Յով., Էգիլեան Գուրգէն, իշխ. Թումանեան Գէորգ, իշխն. Թումանեան Մարիամ, իշխ. Թումանեան Միքայէլ, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանզադեան Յուսիկ, Խոջամուրադ Ռ., Կանայեանց Ստ., Կարապ (Թաշճեանց.), Կոստանեան Յովհաննէս, Ծուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մաշինճեան Մամբրէ, Մելեան Մեսրոպ քահ., Մուսայէլեան Հ., Մելիք-Գարագեօզեան Գ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ, Յովհաննիսեան Տիգրան, Յովհաննիսեան Մ., Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շովրեան, Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Չալխուշեան Գր., Պետրոսեան, Յարութիւն, Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Սաֆրասեան Ա., Սալիմեան, Տէր-Դանիէլեան Դաւիթ, Տէր-Գէորգեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Տոռոմեան Վ., Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Փարեմուզեան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

*Խմբագիր՝* **Ս. Յարութիւնեանց**

*Հրատարակիչ՝* **Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ԹԱՏԵՐԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատի վրայ ռուսները շարունակում են հետապնդել տաճիկներին՝ որոնք խուճապով նահանջում են Երզնկա—Սեբաստիա ուղղութեամբ։ Ծովամերձ գծի վրայ ռուսները գրաւել են Սպեր քաղաքը, որ Կարնից մօտ 55 վերստ հիւսիս-արեւմուտք է գտնւում, իսկ Կարին—Տրապիզոն գծի վրայ Աշկալա քաղաքը։ Հալիդ բէյի զօրամասը (դիւիզիա), Պոնտական լեռների վրայ ահագին զոհեր տալով և իր թնդանօթների մի մասը ճանապարհին թողնելով՝ նահանջում է դէպի Տրապիզոն։ Կարին-Երզնկա գծի վրայ ռուսները գրաւել են Աշկալա քաղաքը, որ գտնւում է 50 վերստ Կարնից արեւմուտք։ Այսպիսով տաճիկները մօտենում են Երզնկային։ Կարինի գծի վրայ գտնուող մեր զօրքերը, ըստ պաշտօնական հաղորդագրութեան, միմիայն Կարինն առնելիս գերել են 235 տաճիկ սպայ և 12,753 զինուոր։ Բացի սրանից՝ նրանք ձեռք են ձգել ահագին քանակութեամբ ռազմամթերք, 9 դրօշակ*) և 323 թնդանօթ։ Այս վերջին թւի մէջ չեն մտնում այն թնդանօթները, որ ռուսները ձեռք են ձգել բերդապահ զօրքը Կարնից դուրս հալածելիս։ Եթէ սրանց վրայ աւելացնենք և գետնի կամ ձիւնի տակ թաղած թնդանօթները, կարող ենք թիւրքերի կորուստն այս կռիւներում առնուազն 500 թնդանօթ հաշւել։ Վանայ և Մուշի գծերի մասին մասնաւոր աղբիւրներից իմանում ենք, որ ռուսները գրաւել են Բաղէշ [Բիթլիս] քաղաքը։

Կարինի անկումը, ինչպէս և այդ սպասելի էր, մեծ լքում է առաջացրել Պոլսում։ Այդ լքումը վերացնելու համար երիտասարդ թիւրքերը հաւատացնում են ժողովրդին, թէ ամեն կողմից օգնական զօրքեր են ուղարկւում Հայաստան՝ ռուսների առաջխաղացումը եթէ ոչ Երզնկայի, գոնէ Սեբաստիայի (Սւազ) մօտ կանգնեցնելու։

. . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . .

*) Այս դրօշակներն ամեն օր ցուցադրւում են Թիֆլիսի հասարակութեանը Փառաց Տաճարի մուտքի առաջ։ Խմբ.

Պարսկական ճակատից այս շաբաթ ստացուած տեղեկութիւնները խիստ մխիթարական են։ Շաբթուայ ընկերում հաղորդւեց, որ ռուսները կռւով գրաւել են Քիրմանշահից 100 վերստ հիւսիս գտնուող Սահնէ քաղաքը, կիսում՝ որ նրանք գրաւել են Քաշանը, որ գտնւում է Ղումից 80 վերստ հարաւ, Սպահան տանող ճանապարհի վրայ, իսկ վերջում՝ որ Քիրմանշահն էլ ընկել է ռուսների ձեռքը։ Յաղթանակների այս շարքը արդէն միանգամից զրկել է Պարսկաստանի այն տարրերին, որոնք դեռ թիւրք-գերմանական պրոպագանդի հովերով են ապրում։ Միաժամանակ այս յաղթանակները շատ մօտեցնում են այն րոպէին, երբ ռուսներն ու անգլիացիք, որ այժմ 180 վերստ իրարից հեռու են, իրար ձեռք պէտք է մեկնեն Միջագետքում։

Միջագետքում ևս կենդանութիւն է նկատւում այս շաբաթ։ Գեներալ Եյմերը, երկար դադարից յետոյ կռուի նախաձեռնութիւնն իր ձեռքն է առել։ Նրա յաջողութիւնների չափի մասին դեռ որևէ տեղեկութիւններ չկան, բայց կռուի դուրս գալու և թշնամու կորուստներ պատճառելու իրողութիւնն ինքնին արդէն ցոյց է տալիս, որ անգլիացիները Միջագետքում այլևս այն ծանր դրութեան մէջ չեն, ինչ որ մի քանի շաբաթ առաջ։

Եգիպտական ճակատի վրայ անգլիացիները Բարրանի մօտ փառաւոր ջարդ են տւել թուրքերին, որի ժամանակ զօրամասի հրամանատար Նուրի բէյը, Էնւեր փաշայի եղբայրը, սպանւել է, իսկ նրա գլխաւոր օգնականը վիրաւորւել և գերի է ընկել։ Թուրքերը յետ են քաշւել պատերազմի դաշտից, թողնելով 200-ի չափ սպանուած և վիրաւոր։ Այս կռուի մէջ աչքի են ընկել հարաւային Աֆրիկայի զօրքերը, որ գերմանական գաղութները խլելուց և զօրշը գերելուց կամ փչացնելուց յետոյ՝ եկել են հիւսիս գործելու թուրքերի դէմ։ Վերոյիշեալ կորուստները թուրքերի եգիպտական արշաւանքի համար աւելի քան զգալի պէտք է լինեն, որովհետև թուրքերը Կովկասեան ճակատի այժմեան վիճակում նրան օգնական զօրք հասցնել չեն կարող։ Արդէն լուր կայ, որ Հալէպի զօրքերը, որոնք սկզբում Եգիպտոսի համար էին որոշուած, հրաման են ստացել Սեբաստիա ճանապարհուելու։

### ԲԱԼՔԱՆԵԱՆ ԹԱՏԵՐԱԲԵՄԸ

Սալոնիկից վերջին օրերս յամառ լուրեր են գալիս, թէ պատերազմական գործողութիւնները շուտով պէտք է սկսուեն։ Դաշնակիցների ոյժը ներկայումս այնքան մեծ է, որ առանց մտահոգութեան կարելի է նայել գալիք դէպքերին։ Սերբիայի զօրքը, որ 130 հազարի է հասնում, արդէն կազդուրուել և վերակազմուել է. Նրանց հետ միա-

սին դաշնակիցները կունենան մօտ 500 հազար զօրք, որ իր դէմը պէտք է ունենայ գլխաւորապէս բուլղար բանակնե-րը, քանի որ Թիւրք զօրքը Բալքաններից արդէն մեկնել է Փոքր-Ասիա, իսկ աւստրո-գերմանները ռուսական և ֆրան-սական ճակատների արդի վիճակում մեծ ոյժեր Բալքան-ներում պահել չեն կարող։

### ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արեւելեան ճակատի վրայ շարժուած սկզբին հանգիստ էր. սակայն վերջին օրերս կենդանութիւն է նկատւում մանաւանդ Ռիգայի շրջանում։ Այստեղ երկու կողմերն էլ ականային և թնդանօթային կրակն օր ըստ օրէ ուժե-ղացնում են։ Գերմանացիք այդ կռիւների ժամանակ օգ-տւում են մի տեսակ հրանիւթով, որ մարդու աչքերից արցունք է հոսեցնում և նոր տեսակի ռումբներով, որոնք պայթելիս սարսափելի թնդիւն են հանում և նեարդային ցնցում պատճառում մարդուս։ Կռիւն ուժեղ է նաև Իլ-լուկստի շրջանում, ուր ռուսները նախանցեալ շաբաթ խլել էին գերմանացիների Գարբունովկա գիւղը, իսկ աժմ էլ այդ գիւղից փոքր ինչ արեւմուտք են շարժուել։

Արեւմտեան ճակատը Համաշխարհային պատերազմի առանցքն է կազմում ներկայիս։ Վերդենի ամրութիւն-ների ամբակոծումը, որի մասին գրել էինք անցեալ ան-գամ, հսկայական ճակատամարտի բնաւորութիւն է ստա-ցել։ Որ գերմանացիք պատրաստւում էին այս բերդի վրայ յարձակուելու՝ այդ յայտնի էր ոչ միայն ֆրանսացոց շտաբին, այլ և մամուլին։ Temps-ը մի երկու շաբաթ ա-ռաջ քննութեան նիւթ դարձնելով Վերդենի վրայ յար-ձակուելու մասին տարածուած լուրերը, նախ իր տարա-կուսանքն էր յայտնում, թէ ինչու պէտք է գերմանացի-ները ֆրանսական ճակատի այդ ամենաամուր կէտն ընտ-րեն յարձակման համար և ապա աւելացնում, որ եթէ գեր-մանացիք իրօք ձեռնարկեն այդ՝ անհրաժեշտ հակահա-րուածը կստանան։ Հէնց այն հանգամանքը, որ Վերդենի դէմ սկսուած կռիւը անակընկալ չէր ոչ ոքի համար՝ մի առանձին նշանակութիւն է տալիս նրան։ Այդ կռիւը բացի իր ռազմական նշանակութիւնից, նկատւում է իբրև մի քննութեան դաս Ֆրանսիայի համար, որի ժամանակ նա պէտք է ապացուցէ, թէ պատերազմի սկզբի իւր անյաջողու-թիւնները հետևանք էին անպատրաստութեան և թէ այս տարիուկէսուայ ընթացքում նա, եթէ ոչ Հռենոսի ափերն արշաւելու, գոնէ այժմեան դիրքերում գերմանացինե-րին դիմադրաւելու չափ պատրաստուել է։ Միւս կողմից՝ այդ կռիւը փորձաքար է համարւում գերմանական ուժի, գերմանական շտաբը պէտք է ցոյց տար չէզոք պետու-թիւններին և իր ժողովրդին, որ սխալ է այն կարծիքը, թէ գերմանական առաջխաղութեանը արեւմտեան ճակատի վրայ սահման է գծուած։ Խորտակելով այդ ճակատի ա-մենամեծ ամրութիւնը նա նախ անչափ մեծ հմայք ձեռք կբերէր չէզոք պետութեանց աչքում և ապա կբարձրաց-նէր իր ժողովրդի խիստ ընկած տրամադրութիւնը։

Վերդենը Ֆրանսիայի ամենամեծ բերդն է Պարիզից յետոյ։ Ֆրանս-պրուսական պատերազմից անմիջապէս յե-տոյ ֆրանսացիք ամեն ջանք գործ են դրել ամրացնելու այս բերդն այնպէս, որ կարողանայ հակակշիռ կազմել այդ պատերազմի հետևանքով Գերմանիային անցած Մետ-ցին։ Այս տարիուկէսուայ ընթացքում բերդի ամրու-թիւններն աւելի ևս կատարելագործուել են։ Ներ-կայումս ունի 18 մարտկոց, որոնցից 12-ը առաջին շար-քի ամրութիւնների շղթան են կազմում, իսկ 6-ը՝ երկ-րորդ շարքի։ Առաջին շղթան բռնում է մօտ 60 հազարա-մետր տարածութիւն։ Սրա դէմ գերմանացիք կենդրոնա-ցրել են, ըստ հեռագրական տեղեկութիւնների, ոչ պա-կաս քան 700 հազար մարդ, այսինքն՝ միջին թուով իւրա-քանչիւր հազարամետրի վրայ 10 հազար մարդուց աւելի։ Ֆրանսացիք ունին դրեթէ հաւասար չափով զօրք։

Վերդենի կռիւներն սկսուեցին անցեալ շաբաթ առա-ջաւոր մարտկոցների շուրջը։ Գերմանացիների սարսա-փելի կորուստ այս կռիւներում այն արդիւնքն են ու-նեցել, որ նրանք աւերել և տիրել են հիւսիս-արեւելեան 2 ամենահեռաւոր մարտկոցի—Դուամոնին և Վոյին, իսկ բերդի արեւելեան կողմից էլ առաջ շարժուելով մօտ 8 կիլոմետր՝ գրաւել են Մորանւիլ գիւղը։ Վերջին տեղե-կութեանց հիման վրայ գերմանական յարձակումների թա-փը թուլացել է, որ կարող է բացատրուել կամ գերմա-նացիների կրած հսկայական կորուստներով և կամ, որ նրանց շտաբը նոր ծրագիր է ուզում մշակել։ Ֆրանսա-ցիներն այս կռիւներում հերոսութեան օրինակներ տու-լին, սարսափելի կորուստներ պատճառելով խիտ շարքերով մարտկոցների վրայ յարձակուող գերմանացիներին։ Սա-կայն և այնպէս կռուի ելքը դեռ մնում է անորոշ։

### ԱՒՍՏՐՕ-ԻՏԱԼԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սովորական թնդանօթաձգութ տեղի ունի բոլոր ճա-կատներում և յատկապէս Իզոնցոյի հովտում։

***

## Ներքին տեսութիւն

### ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

—

Պատերազմի առաջացրած կենսական մեծ հարցերը անցեալ տարուայ օգոստոսին մի ընդհանուր ծրագրային համաձայնութեան բերին Պետական Դումայի վեց կուսակցութիւնները, որոնք միա-համուռ մշակեցին մի քանի պահանջներ։ Այդ համաձայնութիւնը կոչուեց առաջադիմական բլոկ։ Նրա հիմնական պահանջն էր՝ ու-նենալ այնպիսի մի կառավարութիւն, որ երկրի վստահութիւնը վայելէր։ Այդպիսի կառավարութիւն կիրականանար այն դէպքում, եթէ մինիստրները պատասխանատու լինեն ժողովրդական ներ-կայացուցիչների, այն է՝ Դումայի առջև։ Միայն այս պայմա-նով կարելի էր կազմակերպել երկիրն այնպէս, որ պատերազմա-կան ժամանակի պահանջները լաւագոյն կերպով կարգաւորուեն և յաղթութիւնն ապահովուեն։ Այն ժամանակուայ մինիստր-նախա-գահ Գորեմիկինը իր ամբողջ իշխանութեամբ դիմուեց Դումայի այդ մեծամասնութեան դէմ և սկսեց մի քաղաքականութիւն, որ յիշեցնում էր հին ռէժիմը։ Դուման անժամանակ արձակուեց, նրա բացումը երկու անգամ յետաձգուեց։ Դրութիւնն այդպէս

Գերի տաճիկ զինուորները մեր հարցին թէ՝ ինչպէս է հայերի դրութիւնը Էրզրումում, գիւղերում—պատասխանում էին, որ ոչինչ չը գիտեն. բայց նկատւում էր, որ նրանք խուսափում են այդ նիւթի մասին խօսել, գուցէ ենթադրելով, որ մեզ ամեն բան յայտնի է։ Իսկ նրանցից մէկը, յաղթանդամ կազմուածքով, չաուշի աստիճանով և յանդուգն դէմքով մեզ պատասխանեց.

«Ուղիղն ասեմ ձեզ՝ ոչ Էրզրումում և ոչ էլ գիւղերում հայեր չը կան . . . . . . . . . . նրանց տարան աշխատանքի ընտանիքների հետ»։

Այս վերջին խօսքերը նա արտասանեց մի այնպիսի պիղծ կիսաժպիտով, որ կարծես հաճոյք էր զգում, յիշելով կատարուած գազանութիւնները։

Այս տեղեկութիւնները ցնցեցին մեզ և ներկայ եղող միւս հայերին։

Գերիների գնացքը սլացաւ առաջ։

Իսկ մենք՝ մնացինք անշարժ, խորը լռութեան մէջ և յուզուած։

Ս. Յարութիւնեանց

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՆՑԵԱԼԻՑ *)

### Գ.

### 1828—1829-Ի ՊԱՏԵՐԱԶՄԸ

1826 թուի յունիսին պարսից զօրքը անակնկալ անցաւ Արաքսը և ոտքի կանգնեցնելով մահմեդական ազգաբնակութիւնը, պաշարեց Շուշի բերդը։

Այս նախերգանքով էր սկսւում այն եռամեակը, որ բերում էր հարաւային և արեւմտեան Անդրկովկասին երկու պատերազմ։ Մանաւորապէս հայ ժողովրդի համար ահագին նշանակութիւն ունեցաւ այս պատերազմական եռամեակը, հանդիսանալով իբրև անկիւնաքար, որից սկսւում էր նրա պատմութեան նոր մի շրջանը —ժամանակակից Պատմութիւնը։

Անդրկովկասի ռուս հրամանատարութիւնը սկզբում իրան բաւական նեղուած դրութեան մէջ տեսաւ։ Ռազմական միջոցները շատ նուազ էին, տեղական հանգամանքները շատ աննպաստ։ Ուստի կարեւորագոյն նշանակութիւն էր ստանում տեղային ազգաբնակութեան վերաբերմունքը դէպի կռուող կողմերը։ Բնականաբար ռուս կառավարութեան հայեացքը ամենից առաջ կանգ էր առնում հայերի վրայ, որոնք նշանաւոր ոյժ էին կազմում ռազմաբեմ դարձած երկիրներում։

Եւ հայերը սկզբից և եթ, Շուշու պաշարման առաջին իսկ օրերից, շտապեցին գործով ցոյց տալ որ իրանք հաւատարիմ են մնում իրանց այն ձգտումներին, որոնք արտայայտուել սկսել էին դեռ ԺԸ դարի սկզբից, Պետրոս Մեծի ժամանակներից։ Ռուսական հովանու տակ ազատուել տաճկութիւնից, լայն հնարաւորութիւն ձեռք բերել զարգանալու իբրև ազգութիւն — այս էր հայ ժողովրդի վառ տենչանքը։ Ոչինչ չէր պատահել որ թուլացնէր այդ տենչանքը 1820—ական թուականներին։ Հայի համար չէր կարող լինել նոյն իսկ ընտրութեան հարց, երբ մի կողմում ռուսն էր կանգնած, միւս կողմում—նրա դարաւոր կեղեքիչ պարսիկը... Եւ նորից հայ կեանքի մէջ սկսուեց եռանդուն շարժում, որ գնալով ընդարձակուեց, նորանոր շրջաններ ընդգրկեց, որքան ընդարձակւում էին պատերազմական գործողութիւնները։ Այդ շարժումն իր էութեամբ մնում էր նոյնը, ինչ էր և առաջ, նախորդ դարում —ազատագրական։ Խօսում էր նոյն ցեղային բնազդը, աւելի լայն ծաւալուած, արտայայտուելով ինքնաբերաբար, բնականօրէն։ Շուշում, պաշարման առաջին օրից, 1500 հայեր զէնք վերցրին ու համարեա մենակ իրանք պաշտպանեցին բերդը և նրա մէջ փակուած ռուսական փոքրաթիւ զօրքը։

*) Տես «Համբաւաբեր» № 8։

Թէև այսպէս, բայց ազգային այդ զգացմունքի ընդհանրացման և ամրապնդման համար հարկաւոր եղաւ և խօսքի, պրոպագանդի ազդեցութիւնը։ Լրագիրներ ու հասարակական կազմակերպութիւններ այն ժամանակ չը կային։ Միակ լուսաւոր երեւոյթը ամբողջ Անդրկովկասում Ներսիսեան նորաբաց դպրոցն էր Թիֆլիսում։ Նա ունէր մի փոքրիկ տպարան, որի միջոցով Ներսէս Աշտարակեցին խրախոյսի և կոչի խօսքեր էր ուղղում հայութեան։ Հրատարակւում էին փոքրիկ տետրակներ, առանձին թերթեր ու թերթիկներ, որոնք տանում տարածում էին հայութեան մէջ Ներսէսի դիմումները, պաշտօնական տեղեկագրեր պատերազմական գործողութիւնների մասին։

Սակայն այն ժամանակուայ տպագրական մամուլը չափազանց անկատար մի միջոց էր Ներսէսի փոթորկալից եռանդին բաւարարութիւն տալու համար։ Տպագրական դիմումներից աւելի շատ են նրա ձեռագիր գրութիւնները, որոնք գնում էին երկրի զանազան կողմերը ժողովրդականացնելու համար պատերազմը ոչ միայն հայերի, այլ նոյն իսկ և թիւրքերի մէջ։ Յայտնի է որ այդ էլ բաւական չը համարելով, Ներսէսն ընկերացաւ ռուսական բանակին և կենդանի խօսքով էր պատերազմի վայրերում ազդում ժողովրդի վրայ, ներկայացնելով նրան ռուսական արշաւանքը որպէս ազատութիւն, վաղուց, տասնեակ և հարիւրաւոր սերունդների երազած ազատութիւն։

Ազատագրական այդ պրոպագանդի գրաւոր յիշատակարանների (տպած թէ ձեռագիր) մի մասն է միայն այսօր գտնւում մի ձեռքի տակ, բայց այդ էլ բաւական է ըմբռնելու համար, թէ ինչ գաղափարական բովանդակութիւն ունէր այն ժամանակուայ հայկական շարժումը։

Եւ իրաւ, պարսկական և խանական ռէժիմից ազատուելու տենչանքը միայն մարմինը չունէր նկատի։ Ֆիզիքական գոյութեան կոպիտ հարցի հետ փաթաթուած էր մարդկայնութեան ամենագեղեցիկ տեսիլներից մէկը —ցեղային ինքնուրոյնութեան հարցը։

Կոչ էր արւում հայերին ռուսական զօրքերի հետ եղբայրանալու, ռուսական դրօշակին ապաւինելու, որովհետև նրա յաղթանակը և հայ ազգային գործ էր։ Հայութեան համար այդ յաղթանակը համազօր էր իր հին ազգային թագաւորութեան վերակենդանացման։ Ահա ինչպէս էր սկսում Ներսէսը իր շրջաբերական կոչերից մէկը.

«Ամենքից կամ շատերին քաջայայտ է մեր նախնիքների և սիրելի հայրենիքի պատմութիւնը և գիտէք առհասարակ թէ մեր ազգային արժանաւորութիւնների, այն է՝ թագաւորութիւնների, իշխանութիւնների, բոլոր մեծափառ վայելչութիւնների, պատուի, ճոխութիւնների և նոյն իսկ մեր ամբողջ հայրենիքի կորուստը ո՞ր տեղից է եկել և այս բոլոր հասարակական-ազգային դժբաղդութիւնների պատճառներն ովքեր են»։ Շատ պարզ էր այս հարցերի պատասխանը։ Եւ պարզ ու հասկանալի էր մանաւանդ այն, երբ Ներսէսը ասում էր թէ ռուսները իրանց հզօր բազուկը տարածում են մեր աշխարհի վրայ ոչ թէ իրանց պետութեան օգտի համար, այլ առաւելապէս հասարակական օգտի և հաւատի պաշտպանութեան համար*)։

Այսպիսով ռուսասիրութիւնն ընդհանրանում էր հայութեան մէջ իբրև ազգային գաղափարն իր մէջ ամփոփող մի հասկացողութիւն։ Նրա համեմատ էլ ծաւալւում է ազատագրական շարժումը։ Նրան այլևս Ղարաբաղի սահմաններում ամփոփուած չենք տեսնում։ Այդ լեռնային երկրում էր որ հայ մարդը սովորել էր զէնք վերցնել և կռուել իր ազատութեան համար։ Բայց ահա 1827 թուին ռուս-պարսկական պատերազմի դաշտը Արարատեան երկիրն է դառնում և նրա համար կամաւորական շարժում է սկըսւում Վրաստանի և ուրիշ տեղերի հայերի մէջ։ Առաջին հայ կամաւորական խումբը կազմուեց Թիֆլիսում և բաղկացած էր 2000

*) «Յայտարարութիւն քրիստոնէական պարտաւորութեան հպատակաց Ամենաբարեպաշտ Կայսրութեանն Ռուսաց», Թիֆլ. 1826.

20 հազարը հայ էին։ Կային և փոքրիկ թուով յոյներ։ Հայերի համակրանքը դէպի ռուսները ակնյայտնի էր, և տագնապի միջոցին ոգէտ ամբոխը, գրգռուած իր գլխաւորներից, թափառում էր փողոցներում և սպառնում իւրաքանչիւր պատահած քրիստոնեային։

Ահն այնքան սաստկացաւ որ նոյն իսկ Կարապետ արքեպիսկոպոսը, հայոց առաջնորդ և մի շատ ազդեցիկ անձ, ստիպուած էր մի քանի օր թագնուած մնալ մի նկուղի մէջ և հէնց այդ տեղից էլ թուղթ հասցրեց Պասկևիչին, նկարագրելով հայերի դրութիւնը և ցոյց տալով թէ ինչպէս և որ կողմով ռուսները կարող են մտնել Երզրում։

Բայց ոյժի դիմելու կարիք չեղաւ։ Բանակցութիւնները յաջողութեամբ վերջացան, սարսափահար թիւրքերը իրանք յանձնեցին քաղաքի բանալիները Պասկևիչին։ Այդ հանդիսաւոր րոպէին քաղաքից դուրս, ռուսաց բանակի մէջ, երևաց Կարապետ եպիսկոպոսը, խաչը ձեռքին։ Նրան ընդունեցին մեծ յարգանքներով։ Պասկևիչը մեծ ջերմեռանդութեամբ համբուրեց խաչը և գրկեց եպիսկոպոսին...

Եւ այսպէս, թիւրքահայերը ամենավճռական կերպով կանգնում էին օսմանցիների դէմ։ Սա չտեսնուած մի բան էր այն ժամանակից ի վեր, երբ թիւրքերը տիրացան Հայաստանին,—մի երևոյթ, որ ծնուելուն պէս ընդունում էր կրակի և արեան մկրտութիւն։

Մինչդեռ ռուսաց բանակը Սողանլուղում իր խոշոր յաղթանակն էր տօնում, նրա ձախ թևը ենթարկուած էր մեծ վտանգի։ Դա Բայազէտն էր, ուր մի շատ փոքրաթիւ ռուս զօրաբաժին էր թողնուած։ Յունիսի սկզբին Վանի փաշան, մի մեծ և խառնիճաղանճ բանակի գլուխ անցած, մտաւ Ալաշկերտի հովիտը, յարձակուեց Թոփրաք-կալէի վրայ։ Ռուսների հետ օսմանցիների թշնամի էին նկատւում և նրանց հետ միացած հայերը։ Թիւրքաց զօրքը քանդեց և աւերեց հայերի թաղը, 70 հոգի գերի տարաւ։ Այնուհետև փաշան յարձակուեց Բայազէտի վրայ։ Բերդապահ զօրքը, որի հրամանատարն էր գեներալ Պօպովը, առաջին օրը կռուեց մեծ հերոսութեամբ։ Նրա հետ մէջք մէջքի տուած, ոչ պակաս հերոսութեամբ, կռւում էր հայ կամաւոր գունդը։ Գեներալ Պօպովը վկայում էր իր պաշտօնական գրութեան մէջ, որ գնդի հայ առաջնորդները առջևից էին գնում և ամենքն էլ վիրաւորուեցան։ Բայց և այնպէս, թշնամին ուժեղ հանդիսացաւ և իրիկնապահին նա արդէն գրաւել էր քաղաքի կէս մասը։ Թիւրք բնակիչներն, ի հարկէ, իսկոյն անցան փաշայի կողմը և նրանց թաղը դարձաւ թշնամու հզօր դիրքերից մէկը, որ նեղում էր ռուսներին։

Եկաւ գիշերը և տիրած հանդարտութեան մէջ բարձրացան խողխողուող մանկանց աղաղակները. լաց, օրհասական հառաչանքներ։ Թիւրքերը կոտորում էին իրանց թաղում եղած հայերին։ Ռուս զօրքի դրութիւնը միանգամայն յուսահատական էր։ Բայց հայերը չը լքուեցան, չը թողին իրենց մարտական ընկերներին։ Նրանք լցուած էին վրէժի կատաղութեամբ։

Հետևեալ օրը, յունիսի 20-ին, ռուսական զօրքը լարեց իր վերջին ոյժերը և դուրս եկաւ վանելու բազմաթիւ թշնամուն։ Հայ գնդին յանձնուեց դուրս քշել թշնամի զօրքը թիւրքական թաղից։ Հայերը կատաղաբար գրոհ տուին և հանելով իրենց կոտորուած եղբայրների վրէժը, մինչև 1,000 հոգի սպանեցին, չը խնայելով կանանց ու երեխաներին անգամ։ Վճռական յաջողութիւնն այս անգամ ռուսների կողմն էր։ Վանի փաշան, չը կարողանալով դիմանալ հերոսական գրոհներին, շտապեց յետ քաշուել և Բայազէտն այսպիսով ազատուած էր։

Պասկևիչը կանգ չառաւ Երզրումի մէջ։ Ռուսաց բանակն առաջ խաղաց, բայց նրա մի մասը ծանր անյաջողութեան հանդիպեց Բաբերդում։ Ստեղծուեց մի ծանր դրութիւն։ Մահմեդական ազգաբնակութիւնը տեսաւ որ ռուսներին էլ կարող է յաղթել և գլուխ բարձրացրեց։ Դժուար կացութեան մէջ էր Պասկևիչը։ Վտանգաւոր էին խլրտումները մանաւանդ Երզրումում։ Թիւրքերը դաւադրութիւն էին սարքել որ մի գիշերուայ մէջ կոտորեն ռուսներին և հայերին։ Հայերը ժամանակին իմացան այդ բանը և ռուս իշխանութիւնը կարողացաւ ժամանակին առաջն առնել. կալանաւորեց և աքսորեց դաւադրութեան գլխաւորներին։ Այս բոլոր խլրտումները պատճառ դարձան որ Երզրումում էլ կազմակերպուի հայկական գունդ։ Այս միտքը մեծ ուրախութեամբ ընդունուեց և ամենքը, նոյն իսկ հարուստ ընտանիքների զաւակներ, շտապեցին զինուոր գրուել։ Տեղացի հարուստներից մէկը, Մկրտիչ ագան, իր հաշուով հայկական մի հեծելագունդ էլ կազմեց։ Հայերի տրամադրութիւնը բարձրացաւ և իրանց դարաւոր հարստահարողներին նրանք այժմ զգալ էին տալիս իրանց ոյժն ու աներկիւղութիւնը։ Երկար և աղէտալի անցեալի վրէժն էր հանւում. հայերի արարքները յաճախ չափազանցութիւնների էին հասնում և Կարապետ եպիսկոպոսը ստիպուած էր լինում խրատների և յորդորների դիմել։ Բայց ժողովուրդների կեանքի մէջ յաճախ են պատահում գաղափարով գինովանալու րոպէներ, երբ մոռացւում է ամեն ինչ, տեղի տալով ոգևորութեան։

Այսպէս ահա, թիւրքահայ ժողովուրդը 1828—1829 թ. պատերազմին ամեն ինչ անում էր ռուսական յաղթանակը ապահովելու համար։ Նրա գործունէութիւնը միայն համապատասխան շարժման մէջ չէր սահմանափակւում։ Թիւրքահայը ռուս զօրքի տրամադրութեան տակ էր դնում իր ունեցածը, ճանապարհներ էր ցոյց տալիս նրան, բերդերի դրութեան մասին մանրամասն տեղեկութիւններ էր հաղորդում։

Այսպէս էին արել պարսից տիրապետութեան տակ եղած հայերը իրանց ազատութեան համար։ Թիւրքահայերը, կրկնելով իրանց արևելեան եղբայրակիցների գործերը, խորապէս համոզուած էին, թէ իրանք էլ իրանց համար են ազատութիւն պատրաստում։

*(Կը շարունակուի)* Լէօ

## ԹԵՐԹԵՐ ԻՄ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ

### VI

### ՍՏՈՐ ԻՆՏՐԻԳ

Երկու կուսակցութիւնների էր բաժանուած հայ դերասանական խումբը, բէշալական—Զմշկեանի խումբ և ողբերգակ—Շահխաթունեանի (Վաղարշակ, այժմեան Շահխաթունու հայրը)։ Ամերիկեանը անդադար մի խմբից միւսն էր անցնում, մինչև որ հանգուցեալ Սունդուկեանը տուաւ նրան իր ձեռքը և ամուր կապերով շաղկապեց Զմշկեանի հետ... Հակառակորդները աշխատում էին վնասել միմեանց... ինտրիգները խոր արմատ էին ձգել... Գէորգը այդ բոլորը՝ իր արժանաւորութիւնը ստորացնող էր համարում, նա բացարձակ կռւում էր, բղաւում էր, մինչև անգամ հայհոյում էր և ետևից և երեսին, բայց ինտրիգները ստորութիւն էր համարում փր աւելի քան հիւանդ ինքնասիրութեան և արժանապատուութեան համար... բայց հակառակ կողմը (խօսքս Շահխաթունեանի մասին չէ) չէր խնայում նրան, և ընտանիքին, որի պառաւ մօրը անխնայ հարուած տուեց...։

### VII

### ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ

Չեմ մտաբերում որ փորձն էր։ Ես կանգնած էի Գէորգի բնակարանի դահլիճի անկիւնում և սիրահարուած աչքերով նայում էի օր. Գայիանէի խաղին։ Նա հագել էր չթէ շրջազգեստ (դէբիա), գլուխը վրացնակ կապած և յուպկայի տակ ոչ շատ լայն «խ ա ր ա ր դ ա» (այդպէս անուանում էին այն ժամանակուայ նորաձև կրինոլինները)...։

Մեղայ քեզ Աստուած... միայն ես չէի սիրահարուած օր. Գայիանէի վրայ... Նրան սիրում էր քնքոյշ ու պլատոնական սիրով և Գէորգը, որ նոյնպէս չըգիտէր թէ Գայիանէն մի բէալիստ

էր… և ինչպէս չըմբռնարուէր այդ փնքոյշ էակի վրայ, որ անչափ պչրանքով բարձրացնում էր իր իւպկայի ծայրը և ցոյց էր տալիս գեղեցիկ կօշիկի մէջ թաղնուած իր փոքրիկ ոտիկը և այնքան շնորհալի ու չքնաղ արտասանում էր «Ե ս ք ե զ ս ի ր ո ւ մ ե մ, Մ ի ւ լ ի վ ա ն» (Սէր և Նախապաշարմունք)…

Ինչևիցէ փորձը շարունակւում էր, և յանկարծ դահլիճը մտաւ պառաւ տիրուհին՝ զայրացած ու սըպըրդուած դէմքով…

—Արա. ասաց նա ու բռնեց օր. Գայիանէի ձեռքից և քաշելով տարաւ միւս սենեակը…:

Ամենքը շուարած էին: Յանկարծ լսուեց մի ճիչ ու մի ծանր մարմնի անկումն… Այդ տիրուհի-մօր ուշաթափ մարմինը պարզուեց յատակի վրայ, իսկ օր. Գայիանէն շտապ, գրեթէ վազելով իջնում էր աստիճաններով… Ես կամենում էի վազել նրա ետևից, գուցէ նրան հարկաւոր էր մի երիտասարդ ասպետի օգնութիւնը, երբ ականջիս հասան բերանից բերան անցնող բառերը…:

—Տղայ է եղել, տղայ է եղել, օր. Գայիանէն տղայ է եղել…

—Վայ իմ գլխին, վայ իմ նամուսին, կրկնում էր վշտացած տիրուհի-մայր Եղիսաբեթը… Ամենից շատ շուարած էր խեղճ Գէորգը, որը, կրկնում եմ, ամենևին գործին տեղեակ չէր…

Ես կանգնած էի թրջուած հաւի նման…

Այդպէս ուրեմն, սուր ինտրիգը չըխնայեց ոչ ընտանիքը, ոչ պառաւ մօրը, որի ականջին փսփսացին թէ նրանց տուն եկող աղջիկը աղջիկ չէ, այլ տղայ, և պառաւը քննեց, հետաքօտեց ու համոզուեց, որ փսփսոցը ճիշտ է եղել…:

VIII

ԳԱՂԱՓԱՐԻ ՄԱՐՏԻՐՈՍԻ ԱՐՏԱՍՈՒՔՆԵՐԸ

1862 թուականին, առաջին անգամ բեմ ելաւ Գէորգ Չմշկեանը և քառասունից աւելի երկար ու ձիգ տարիների ընթացքում ծառայեց հայ բեմին… Մոլեռանդ մարտիրոսը համբերութեամբ տանում էր իր խաչը… Նա ամեն կողմից հալածւում էր… անդադար տանջւում էր… Նրան ոչ ոք չէր խնայում, բայց նա էլ գազանի նման աջ ու ձախից հարուածներ էր ստանում և ինքն էլ հարուածում էր…

— Ես իմ դերասան տեղովս, լորդ, արհամարհում եմ ձեզ և ձեր նմաններին, ասում էր նա բեմի վրայ (Սէր և Նախապաշարմունք)…

Կեանքի մէջ ևս նա նոյն արհամարհանքով վերաբերւում էր նրանց, որոնք թշնամաբար նայում էին դերասանների վրայ… մարտնչում էր բեմի վրայ կենդանի խօսքով, մամուլի մէջ իր շնորհալի գրչով… Դուք ինչ գաղափար ունիք այժմեան գործիչների մասին… Սրանց համար ամեն բան պատրաստ է. և լեզու, և գրականութիւն, և մամուլ, և պարբերական հրատարակութիւններ. «Այդ պատճառ եղաւ, գրում է Գէորգը իր յիշողութիւնների մէջ, բեմ դուրս հանելու եւրոպական թարգմանութիւնները նոյն աշխարհաբար լեզուով, որ… շատերը, հայերի մէջ ընդունուած գիտնականներն անգամ անհնարին էին համարում»:

Լեզու ասած բանը չկար, ռեպերտուար չկար. թարգմանութիւնների պէտք կար, բայց մարդիկ չգիտէին ինչ լեզուով թարգմանեն…

Աւելի ուշ, 66 և 67 թուականներին, երբ Գրիգոր Իւանիչ Իգմիրեանը իր ամուսին Սոֆիայի (դերասանուհի Սոֆիա Մելիք-Նազարեան) և երեխաների հետ դուրս էր գալիս զբօսնելու Ալեքսանդրեան նորատունկ այգին և նրանց հետ խօսում էր հայերէն, վիրախօս Թիֆլիսը նրանց վրայ մատով էր ցոյց տալիս և հետևեալ օրերը Թիֆլիսը լցւում էր այդ այգին տեսնելու այն խելագարներին, որոնք հայերէն էին խօսում… Այսպիսի ողբերգական հանգամանքներում գտնւում էր խեղճ մարտիրոսը և նրա եռանդը հետզհետէ աւելանում էր ու չէր ընկճւում: Դուք տեսաք, թէ ինչպէս սուր ինտրիգը մտաւ նրանց ընտանիքը և անխնայ հարուածեց պառաւ մօրը. այնուհետև ով կը խնայէր երիտասարդ Գէորգին:

Ահա նրա սրտից բղխած ողբը. «Մինչև Յասուլէճեանցների գալը ես այնքան չէի հալածուիլ, ինչքան դրանց գալուց յետոյ, այնպէս որ սկսեցի բոլորովին զզուել թատրոնական գործունէութիւնից»… Իսկ յետոյ: Այդ տողերը տպուած են 1876 թ. «Փորձի» համարներում, իսկ 1878, 79, 80 թուականներին, երբ իշխան Ամատունու կոմիտէի յանձնարարութեամբ նա գնաց Պոլիս դերասանուհիք և դերասաններ բերելու, վերադարձին իր մատղահաս երեխաները վարակիչ հիւանդութիւնից մեռած գտաւ… խեղճ մարտիրոս, հայրենիքից ու սիրած բեմից հեռու վերջին շունչդ արձակած հեռաւոր հիւսիսում, ինչպէս ասում են, ժ ա մ ա ն ա կ ա ւ ո ր ա պ է ս հողին յանձնուած, միթէ քո գերեզմանի «բլրակը» նոյնպէս պէտք է հարթուի՞ ինչպէս ուրիշներինը և չարչարուած ու տանջուած աճիւնդ պէտք է մնայ հեռու քո հայրենիքից, հեռու մայրենի հողից, որը ջրել ես դու քո արեան քրտինքով, մարտիրոսի արտասուքներով…

IX

ԱՆՇՈՒՔ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հայոց Դրամատիկ ընկերութեան խորհուրդը յայտնեց, որ կիրակի, յունուարի 3-ին լինելու է հ ո գ ե հ ա ն գ ի ս տ ը ն կ ե ր ո ւ թ ե ա ն պ ա տ ո ւ ա ւ ո ր ա ն դ ա մ ի, իսկ դերասանական ընկերակցութիւնը՝ թ ա տ ր ո ն ի հ ի մ ն ա դ ի ր Գէորգ Չմշկեանի հոգեհանգիստը… Երկու յայտարարութիւններն էլ դուրս եկան միենոյն օրը: Այդ էր պատճառը, որ հոգեհանգստի սեղանը շրջապատել էին Թիֆլիսի թեմական առաջնորդը, Բենիկ վարդապետը ու Վանքի միաբանութիւնը… ուրիշ եկեղեցիների քահանաները բացակայ էին ոչ թէ այն պատճառով, որ չէին կամենում պատուել հանգուցեալին և կամ ծուլացել էին, այլ որովհետև չըգիտէին… Թիֆլիսի քահանաները մեծ համակրութեամբ վերաբերւում են առհասարակ հայ գործիչներին և մանաւորապէս հայ բեմի մշակներին: Դրան ապացոյց կարող է լինել Ս. Մանդինեանի և տ. Փառանձեմի թաղումները… Ս. Մանդինեանցի թաղմանը և հոգեհանգստին ներկայ էր նոյն իսկ թեմական առաջնորդը… իսկ մի քառասուն տարի առաջ մի յուշարար Ագիբէգեանի կամ տաղանդաւոր կոմիկ Մատինեանի կամ Թոմա Ջարդեղեանի կամ նոյն իսկ Ամերիկեանի թաղմանը ով կըտեսնէր ոչ թէ միայն թեմական առաջնորդ, այլ մինչև անգամ մի քանի քահանայ…

Բայց և այնպէս Գէորգի հոգեհանգիստը անշուք էր…

Պերճախօս Բենիկ հայր-սուրբը լուռ կանգնած էր…

Ես յիշում եմ վերջինիս արտասանած ճառը Գ. Սունդուկեանի թաղման ժամանակ, որին հեղինակը համեմատում էր ծիծեռնակի հետ, որ մտնում էր օջախները և նրանց նկարագրում էր: Ես սպասում էի, որ նա կընմանեցնէ Գ. Չմշկեանին այն փայլուն թռչնակին, որ անդադար խունանում է, փոխում է իր փետուրները և այսօր փետրւում է Միքայէլի, Օսէփի և Պէպոյի փետուրներով, վաղը կարդինալ Րէշիլիոյի, արտիստ Սիւլիվանի, Թուղթ խաղացող Ժորժի փետուրներով…

Չմոռացաւ իր վաղեմի բարեկամին միայն Ղևոնդ քահանայ Աթանասեանը, որ պատմեց իր յուշերը Չմշկեանի մասին, երբ վերջինս 63 կամ 64 թուականներին այցելել էր Ամերիկեանի և Ս. Մանդինեանի հետ Երևանը և այնտեղի հոգևոր դպրոցում, Ս. Սարգիս եկեղեցու գաւթում, տուել էր մի քանի ներկայացումներ… բայց այդ բոլորը յուշեր էին, որոնք կարող էին զարդարել լրագրական էջեր և ոչ խօսք, որ արտասանում են քառասունից աւելի տարիների ընթացքում ազգային ասպարէզի վրայ գործող անձնաւորութեան մասին… մի ասպարէզի վրայ, որ հարուածում էր նրա ընտանիքը և նրա հոգին, որ մաշում էր նրա առողջութիւնը ու կեանքը… Գ. Չմշկեանը վախճանուեց մօտաւորապէս 80 տարեկան հասակում, բայց ինչ կեանք էր նրա կեանքը վերջին 10

տարիների ընթացքում… բացի այդ նա պատկանում էր մի երկարակեաց սերունդի. օրինակ տիրուհի-մայր Եղիսաբէթը ապրեց 95 տարուց աւելի…

X

## ՎԵՐՋԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Տօնում էինք Տէր-Դաւթեանի քառասնամեայ յոբելեանը… Տիգրան Նազարեանը հրաւիրեց Գ. Ջմշկեանին ընտանիքով ներկայ գտնուելու ճաշկերոյթին, որ պէտք է լինէր «Ֆանտազիա այգում… Նազարեան պատրաստել էր մի շքեղ ծաղկեփունջ, որ ներկայացրեց Գէորգին ու մի քանի պատշաճ խօսքերով շնորհաւորեց նրա վաղեմի աշխատակից Տէր-Դաւթեանի յոբելեանը: Գ. Ջմշկեանը շատ զգացուած էր, որ նրան յիշեցին, չմոռացան… Նա ունէր նոր մանկան սկսող երեխայի քայլուածք ու լեզուն էլ թոթովում էր երեխայի նման… Նա արտասուքը աչքերին անդադար իր թոյլ ձեռքերով թոթւում էր Տ. Նազարեանի և իմ ձեռքը և անդադար կրկնում.

—Շնորհակալ եմ, շնորհակալ եմ, շնորհակալ եմ որ չմոռացաք…

Ես խօսել չէի կարողանում, արտասուքը ինձ խեղդում էր:

—Վանօ ջա՜ն, ասաց նա, գեո դոչաղ ես. շարունակիր, գործիր..

—Թանկագին Տիգրան. անչափ շնորհակալ եմ ուշադրութեանդ համար, ծաղիկների համար, անչափ ուրախացրիր ինձ յիշելով…

Նա իր մանկական քայլուածքով ճանապարհեց մեզ մինչև պատշգամբը… բայց ոչ ինքը և ոչ աղջիկը յոբելեանական ճաշին ներկայ լինել չկարողացան…

Այդ օրը մեռաւ ինձ համար Գ. Ջմշկեանը:

Այդ օրուանից ես այլևս չտեսայ ու չեմ տեսնի Գէորգին, բայց ոչ ես և ոչ նրա խաղը յիշողները երբէք չեն մոռանայ Ֆրանսիայի խորամանկ քաղաքագէտ կարդինալին, ոխը սրտում մնացած տանջուած Պէպային, հպարտ արուեստաւոր (արտիստ) Սիլիւանին, Շէքսպիրի արիւնարբու հրէայ Շէյլոկին և մանաւանդ հայկական թատրոնի բազմաչարչար հիմնադիր-մշակ Գէորգ Ջմշկեանին… *)

Հանգիստ աճիւնիդ. թող թեթև լինի գերեզմանիդ հողը… Թող այդ հողի միջով անցնի ու հասնի ականջիդ երանաւէտ ձայնը. կըշինուի հայ թատրոնի սեփական շէնքը. կայ մի մարդ, որ կըձեռնարկէ հայ թատրոնի շէնքը…

Յ. Տէր-Գրիգորեան (Վանօ)

---

## ԹԱՆԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԳԵՐԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԻ ԱՌԹԻՒ *)

(Վերջ)

Այժմ անցնենք Ամերիկային և կանգ առնենք մի քիչ աւելի: Հիւսիսային Ամերիկայի Միացեալ Նահանգների տնտեսական դրութիւնը բաւական տարբերւում է եւրոպական երկրներից: Այնտեղ աշխատավարձը ընդհանրապէս անհամեմատ մեծ է, քան մեզանում: Ամերիկայի ձեռնարկողները աւելի քիչ են դիմադրում բանուորների կողմից աշխատավարձը բարձրացնելու համար արուող պահանջներին, քան Եւրոպայում: Ամերիկայի դրամատէրերի այդօրինակ զիջողութիւնը բացատրւում է մի կողմից, որ պետութիւնը հովանաւորում է մաքսային սակագինը, իսկ միւս կողմից տրեստների գոյութեամբ: Վերջիններիս միջոցով հեշտ է լինում արդիւնաբերութեան աւելացող ծախքերը բարդել սպառողների վրայ: Ուրիշ խօսքով ձեռնարկողները, իրար մէջ միութիւններ (տրեստներ) կազմելով, մի ձեռքով աւելացնում են արդիւնաբերողների աշխատավարձը, իսկ միւս ձեռքով յետ ստանում նոյն բանուոր-սպառող ամբոխից:

1910 թուին տեղի է ունեցել մի անկետային վիճակագրութիւն 4,000 արդիւնաբերական հաստատութեանց, որոնք բարձրացրել էին աշխատավարձը և 96 տեսակ գործածութեան անհրաժեշտ առարկաների գինը: Այդ վիճակագրութիւնից հետեւեալ եզրակացութիւնը կարելի է հանել. նախ՝ 1902-ից մինչև 1906 թիւը 96 տեսակ մթերքների գները բարձրացել են 64,1%-ով, մինչդեռ անհամեմատ աւելի երկար ժամանակամիջոցում—1896-ից մինչև 1906 թ.—աշխատավարձը բարձրացել է միայն 19,1%-ով: Երկրորդ՝ 1906—1908 թուականների ընթացքում աշխատավարձը բարձրացել է միայն 3%-ով, իսկ մթերքներինը՝ 14,30%-ով: Երրորդ՝ 1908-ից մինչև 1910 թիւը աշխատավարձը բարձրացել է դարձեալ 9%-ով, իսկ մթերքների գները՝ 22,9%-ով:

Թէ որչափ խաբուսիկ է լինում շատ անգամ աշխատավարձի բարձրացումը, թէկուզ հէնց հետեւեալ օրինակից կարելի է տեսնել: Նորերումս մի քարածուխի տրեստ մի տոնն ածուխի գինը 50 կոպէկով բարձրացրեց, պատճառաբանելով, որ աշխատավարձը և արդիւնաբերութեան վրայ արուող ծախսը աւելացել է: Այդ առիթով Նիւ-Եօրկի առևտրա-արդիւնաբերական օրգաններից մինը՝ «Journal of Commeece» մանրամասը քննութիւն կատարեց և հետեւեալ հանգամանքները երեւան հանեց: Աշխատավարձը բարձրացել էր 11 կոպ., իսկ միւս ծախքերը առաւելը 10 կոպ., մինչդեռ այս երկուսը միասին առած՝ տրեստի տէրերի աւելացրածի կէսից աւելի պակաս է:

Ամերիկայի երկրագործութեան մինիստրի հաշւով՝ այն 13 միլիարդ դոլլարից, որ սպառողները տարեկան վճարում են գիւղատնտեսական մթերքների համար, արդիւնաբերողները, այսինքն՝ գիւղական արդիւնատէրերը այդ գումարից ստանում են միայն 6 միլիարդ, իսկ մնացած 7 միլիարդը մտնում է միջնորդների գրպանը:

Ահա մի քանի մանաւոր օրինակներ: Բանջարանոցապահը Ֆլորիդայում մի բուշէլ*) կանաչ սիսեռի համար ստանում է 2 դոլլար 25 ցենտ: Ճանապարհածախս Ֆլորիդայից մինչև Նիւ-Եօրկ նստում է 50 ցենտ, մինչդեռ սպառողը Նիւ-Եօրկում մի բուշէլի համար աւելորդ վճարում է 6 դոլլար 40 ցենտ: Այդպիսով միջնորդը մի բուշէլից աշխատում է 57%: Նոյնն է և ձուն, որի մի դիւժինի համար գիւղատնտեսը ստանում է 30 կոպ., իսկ Նիւ-Եօրկի սպառողը վճարում է 95 կոպ.: Այս ամենից յետոյ զարմանալի չէ, որ Նիւ-Եօրկի մի մեծ ակցիոներական ընկերութիւն, որը ուտեստի մթերքների առևտրով է պարապում, 50% դիւիդենտ է տալիս: Այնուհետև Իովի ագարակատէրերը Չիկագոյի մսավաճառների տրեստին վաճառում են խոզը—100 ֆունտը 15 ռուբլով, և հէնց նոյն ագարակատէրերն էլ իրենց խոզի միսը առնում են երշիկի կամ զանազան կոնսերվների ձեւով, ֆունտը 36—40 կոպէկով:

Բայց առևտրական միջնորդների շնորհիւ թանգութեան աւելի սարսափելին հետեւեալն է: Ամերիկայի կառավարութիւնը տնտեսական միջոցներով կառուցում էր Պանամայի ջրանցքը: Բանուորներին ինքն էր ուտեստի մթերքներ մատակարարում, սպառողական մեծ ընկերութեան պէս մի բան կազմակերպելով, որը ամբողջ ջրանցքի երկարութեամբ ունէր իր բաժանմունքները: Եւ ահա երևաց, որ ջրանցքի շրջանում ոչխարի մսի ֆունտը ծախւում է 12 կոպ., տաւարի մսի երկրորդ տեսակը 15 կոպ., նոյնը, առաջին տեսակը՝ 25 կ. և հորթի միսը 12 կ.: Իսկ Նիւ-Եօրկում ոչխարի միսը արժէր 24 կ. ֆունտը, տաւարի միսը երկրորդ տեսակը 44 կ., առաջին տեսակը 56 կ., իսկ հորթի միսը 30 կոպ.:

Գների այդ տեսակ խոշոր տարբերութիւնը ապացոյց է, որ

---

*) Ծանօթութիւն.—Գէորգ Ջմշկեանը ունի մի հարուստ յիշատակարան, որ անձամբ կենդանի ժամանակ յանձնել է պ. Տ. Նազարեանին, ինչպէս և Ադամեանի բոլոր նամակները…

1) Տես «Համբաւաբեր» № 8:

*) Բուշէլը Հիւսիսային Ամերիկայի Միացեալ Նահանգներում գործածուող չափ է, որը հաւասար է $1^{36}/_{100}$ չետվերիկին.

Նիւ-Եօրկում և Միացեալ Նահանգների միւս քաղաքներում չկան սպառողական ընկերութիւններ, եղածներն էլ անչափ թոյլ են։

Նորերումս ձեռնարկած անկետայի կազմողները գանգատւում են, թէ մամուլը և քաղաքային ինքնավարութիւնները անտարբեր են թանգութեան դէմ կռուելու հարցին։ Վերջիններիս պատասխաններից պարզ երևում է, որ իրանք բացասաբար են վերաբերւում քաղաքային ինքնավարութեան ձեռնարկած անհրաժեշտ մթերքների առևտրին։ Այդ բացասական վերաբերմունքը, թերևս, այնքան էլ վատ չէ, որովհետև Ամերիկայի շատ քաղաքների գործերի վարիչները և մամուլը կաշառակեր են։

Մինչև անգամ Ամերիկայի քաղաքների քաղաք. ինքնավարութիւնները սեպհական շուկաներ կազմակերպելու գործում այնքան էլ յաջողութիւն չեն ունեցել, որովհետև շուկաների վերահսկիչները կաշառւում են առևտրականներից և մատների արանքով նայում գների բարձրացմանը և ընդհանրապէս շահագիտական ձգտումներին։

Անկետայի այն հարցմանը՝ թէ այս կամ այն քաղաքում գոյութիւն ունեն կօօպերատիւներ—աւելի քան խղճուկ հետևանքներ են ստացուել։ Թէև կօօպերացիա բառը գրեթէ բոլոր պատասխաններում էլ պատահում է, բայց այդ բառով քաղաքային ինքնավարութիւնները հասկանում են ակցիոներական ընկերութիւններ, և կօօպերացիա բառը սեփականացրել են, որովհետև աւելի ժողովրդականացած է։ Բայց կան և իսկական կօօպերատիւներ, ինչպէս, օրինակ, «Միութիւն տանտիկինների» Կինկինատում, որը գիւղատնտեսական մթերքները ուղղակի Կենտուկի ագարակատէրերից է գնում։ Այդպիսի մի կօօպերատիւ էլ հիմնել էին և Ֆիլադելֆիայի կանանց ակումբի անդամները՝ հաւկիթներ բերել տալու համար։

Այդպիսով Միացեալ Նահանգներում թանգութեան դէմ կռուելու գլխաւոր միջոցներն են՝ կօօպերացիան և գիւղատնտեսական մթերքների արդիւնաբերութեան բազմացումը։ Դժբախտաբար կօօպերացիան այնտեղ դեռ ևս գտնւում է սաղմային վիճակում, ու նրա զարգացման պայմանները աւելի քիչ նպաստաւոր են, քան մեզանում, Ռուսաստանում։

Վ. Տոտոմեանց

## ՍՈՎԸ ՊԱՏՃԱՌ ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ *)

### ՅԵՏԱԴԱՐՁ ՏԻՖ

—

Յետադարձ տիֆը սկսւում է յանկարծ սաստիկ դողոցով, ցաւերով ամբողջ մարմնում։ Տաքութիւնը բարձրանում է 40—42°, բծեր չեն լինում, փայծաղը սաստիկ մեծանում է, որ զգալի է շօշափելիս։ Այդ նոպան (приступъ—accès) տեւում է 5—7 օր. և վերջանում է յորդառատ քրտինքով, փայծաղի փոքրանալով և տաքութեան իջմամբ մինչև 37 և աւելի ցածր աստիճանի։ Հինգ—7 օրից յետոյ կրկնւում է միևնոյն նոպան, բայց աւելի կարճ ժամանակ՝ 3—7 օր։ Պատահում են կրկնութիւններ 4—5 անգամ, բայց աւելի թեթև։ Նոպաների ժամանակ հիւանդի արեան մէջ գտնւում են առանձին մանրէներ՝ բարակ, երկար խցանահանի ձևով, որ գտել է Օբերմէյեր (Obermeier) 1873 թուին, ուստի կոչւում են ոլորամանրէ (sporellam) Օբերմէյերի։

Այդ տիֆը համեմատած բծաւորի հետ աւելի անվտանգ է և դրա մահացութիւնը հասնում է 1—3%, եթէ չեն երևում բարդութիւններ, այն է՝ դեղնացաւ, թոքերի բորբոքում, փայծաղի պատռում և այլն։

Կանայք այս դէպքում յաճախ ունենում են արգանդի արիւնհոսութիւն և վիժում։

Յետադարձ տիֆը, ինչպէս և բծաւորը, ըստ նորագոյն հետազօտութիւնների՝ տարածւում է միջատների, գլխաւորապէս հագուստի ոջիլի միջոցաւ, ինչպէս այդ հաստատում է Շ. Նիկոլը, որի մասին խօսեցինք մեր բծաւոր տիֆի մասին յօդուածում։ Մի խօսքով վարակը տարածւում է արեան միջոցաւ։ Հռչակաւոր Պաստեօրեան Ալժիրի աշխատանոցի բժիշկ Սերժանը հաղորդում է, թէ յետադարձ տիֆով հիւանդ կապիկի արիւնը, որի մէջ կային ոլորաձև մանրէներ, ընկաւ յանկարծ երեք հոգու աչքերը, որոնցից մէկը ունէր ակնոցներ, միւս երկուսը ոչ. այս վերջինները հիւանդացան յիշեալ տիֆով։ Նշանակում է վարակը՝ բացի ոջիլների միջոցաւ տարածուելուց, կարող է տարածուել և ուրիշ ձևով, այն է՝ լորձաթաղանթով, մարմնի քերուածքով, վէրքով և այլն։

Շատ հետաքրքրական է, թէ ինչո՞վ կարելի է բացատրել յետադարձ տիֆի նոպաները ընդհատումներով (перемежаемость)։ Սերժանը բացատրում է նոյն պատճառներով, ինչպէս և ջերմախտը։ Երբ արեան մէջ երևում և զարգանում են Օբերմէյերի ոլորամանրէները, հիւանդի արեան մէջ գոյանում են հակաթոյներ, որոնք խանգարում են յիշեալ մանրէների զարգացումը. և մանրէների մեծ մասը կլանւում են արեան սպիտակ գնդիկներից։ Երբ հակաթոյնը պակասում է, այն ժամանակ ոլորամանրէները սկսում են զարգանալ՝ տալով առիթ նոր նոպայի։ Յայտնի մանրէաբան հանգ. Ղաբրիչեսկին մինչև անգամ պատրաստել է հակասպիրոխիտային շիճուկ, որի սրսկմամբ ոչնչացել են ոլորամանրէներ (սպիրօխիտներ) մկան արեան մէջ, այսպիսով ցոյց տալով, որ արեան մէջ գոյանում են մանրէասպան թոյներ յետադարձ տիֆից։ Պիտի աւելացրած, որ այդ տիֆի դէմ շատ օգտակար միջոց է 606-ը, որը գործադրւում է սիֆիլիսի դէմ։

Ախտապաշտպանողական միջոցները նոյնն են, ինչ որ առաջարկւում են բծաւոր տիֆի դէմ, որոնց առթիւ խօսեցինք այդ տիֆի վերաբերեալ յօդուածում։ Քանի որ յետադարձ տիֆը նոյնպէս վարակիչ է, հարկաւոր է առանձնացում, ախտահանում և միջատահանում (дезинфекція и дезинсакція)։

(Կը շարունակուի) Բժ. Աղասարեան

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

—

**Նոր ապաստարան փախստական երեխաների համար.**—Բարուանարայում այս փետրուարին բացուեց ապաստարան փախստական որբ երեխաների համար. ապաստարանում լինելու են 100 երեխայ։ Առայժմ ընդունուել են 22 հոգի 3 տարեկանից մինչև 11 տարեկան հասակի։ Ապաստարանը յանձնուած է Կ. Հ. Բ. Ընկ. Բարուանարայի ճիւղի վարչութեան, իսկ կառավարելու համար կազմուած է մի առանձին մասնաժողով, որի անդամներն են՝ Դր. Թումանեանց, Հրանտ Սիմէօնեանց, Ս. Էզիլեանց և տեղական դպրոցների վարժուհիներ՝ օր. օր. Մ. Օգարաշեանց և Կոստանեանց. կառավարիչ հրաւիրուած է Թիֆլիսից տիկ. Գօղոսեանց և օգնական՝ օր. Ե. Էզիլեանց։

***

**Թիֆլիսի փախստականների նպաստը.**—Փախստականների գործերի գլխաւոր լիազոր գեն. Թամամշեվը հաղորդում է Հայկական Կենտրոնական Կոմիտէի նախագահին, որ նա յանձնել է Թիֆլիսի նահանգապետին փախստականներին նպաստ տալու յունուար ամսուայ հաշուին 27,060 ռ.։

***

**Նոր գումար փախստականների կարիքների համար։**—Հայկ. Կենտ. կոմիտէն ստացաւ փախստականների գործերի գլխաւոր լիազոր գեն. Թամամշեվից 50,000 ռ. փախստականների համար շորեր պատրաստելու։

***

*) Տես „Համբաւաբեր" № 6։

Վանում այժմ գտնուող հայերի թիւը.—Վանի և նրա շրջանի ազգաբնակութիւնը նորերս ցուցակագրուել է. ցուցակագրութիւնը ցոյց է տուել, որ այժմ այնտեղ կան 8,900 տղամարդ, 2,890 կին, 2,584 երեխայ, որոնցից մի քանի հոգի որբեր են։

***

Նոր որբեր.—Բժիշկ Իւսրկօ Խնուսից հեռագրով հաղորդում է Հ. Կ. Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանին հետեւեալը. «Ժողովել ենք շատ որբ երեխաներ. զինուորները հնարաւորութիւն չունեն նրաց տեղափոխելու, ճանապարհները փակուած են, անհրաժեշտ է Ձեր օգնութիւնը»։

***

Իգդիրից Խնուսի և Մուշի փախստականներին օգնութիւն հասցնելու համար Ս. Մատինեանցը հեռագրում է Հայկ. Կենտր. Կոմիտէին. «Ձեր ուղարկած 5,000 ռ. և 89 հակ չորերը ստացել եմ. մի խումբ հմուտ, փորձուած մարդիկ ուղարկեցի Խնուս և Մուշ՝ օգնութիւն հասցնելու ազատուած հայերին, նրանց հետ ուղարկեցի շաքար, թէյ ալիւր և չորեր. կուղարկեմ նորից մարդիկ և չորեր»։

***

Կ. Հ. Բ. Ը-թեան խորհուրդը ստացել է Փոխարքայի դիւանից 800 ռ.՝ ամսոյս 14-ին փախստականներին ցուցակագրելու ծախսերի համար։ Նոյն նպատակի համար ստացուած է եւ 6,000 ռ.։

## ԳԱՒԱՌ

Աղբաշ գիւղից.— Աղբաշի շրջանում գտնուող փախստականները բացի պետական գանձարանի ուտելիքի նիւթական օգնութիւնից, ուրիշ ոչինչ չեն ստանում. Նրանք գտնւում են շատ թշուառ դրութեան մէջ և բառիս բուն նշանակութեամբ մերկ են և բոլորովին զուրկ անկողիններից։ Շուտով պէտք է նրանց հասցնել անկողիններ և հագուստ։

***

Նոյն տեղից գրում են. Ի նկատի ունենալով, որ տեղիս Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի վարչութեան անդամներից շատերը և վարչութեան երեք անդամները ներկայումս գտնւում են պատերազմի դաշտում և ընկերութեան գործերն էլ կանգ էին առել, վարչութեան մնացած անդամները յունուարի 13-ին, դպրոցի շէնքում հրաւիրեցին ընդհանուր ժողով, վերականգնելու յիշեալ ընկերութեան օգտաւէտ գործունէութիւնը։ Այդ ժողովում նախագահ ընտրուեց պ. Տիգրան Տէր-Յակոբեան և քարտուղար՝ օր. Մանեա Թէոսեան։ Նոր անդամներ ընտրուեցին՝ Տիգրան Տէր-Յակոբեան, Արշակ Ալոյեան, օր. Մանեա Թէոսեան, Արտաշէս քհ. Տէր-Դաւթեան և Խաչատուր Ենգիբարեան։

***

Սարիղամիշ.— Էրզրումի գրաւումից յետոյ Սարիղամիշը հանդիսանում է առաջին կայանը գաղթականական նոր հոսանքի։ Երէկ տեղիս գաւառապետը պաշտօնապէս յայտնեց, թէ պէտք է պատրաստութիւն տեսնել ընդունելու Հասան-Ղալայից ուղևորուած 75 փախստական կին և երեխաներ։ Տեղիս քաղաքների միութեան լիազօրի օգնական պ. Թադէոսեանը խոստացել է հնարաւոր աջակցութիւնը ցոյց տալ նրանց համար բնակարան գտնելու։ Կարևոր է, որ տեղիս Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի տրամադրութեան տակ դրուի մի հանրակացարան, որպէսզի հնար լինի գոնէ առնուազն երկու շաբաթ փախստականներին այստեղ ցոյց տալ նախնական բժշկական, դիետաւորման և այլ օգնութիւն և ապա տեղաւորելու նրանց ազատ հայկական գիւղերում։ Ներկայումս Սարիղամիշում կան 70 տան չափ փախստական հայեր։ Մեծ մասը 1914 թ. փախած բասենցիներ են։ Փախստականներից 54 ընտանիք ստացել են միայն դեկտեմբեր ամսուայ պետական նպաստ 15 կ. օրական, իսկ մնացեալների համար լրացուցիչ ցուցակ է ներկայացուած։ Էրզրումի գրաւումից յետոյ շրջանումս եղած փախստականները թոյլտուութիւն են խնդրում խմբերով հայրենիք վերադառնալու, տեսնելու իրանց տուն ու տեղը։ Մի խումբ Իշխու գիւղացիներ վերադառնալով յայտնեցին, որ ոչ մի փայտի կտոր չէ մնացել և ամբողջ տները քարուքանդ են արուած։

Պէտք է միջոցներ ձեռք առնել Էրզրումից այս կողմը գտնուած բոլոր գիւղայի տղամարդկանց, գարունը բացուելուն պէս, վերադարձնելու հայրենիք ցանքսը ձեռնարկելու համար։

***

Դիլիջանում բծաւոր տիֆը թուլացել է. այժմ փախստականների հիւանդանոցում կայ վեց հիւանդ, սրանք էլ համարեա առողջացել են. Նոր դէպքեր վերջին ժամանակներս չեն նկատուել։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

Հ. Կ. Կոմիտէի վերջին նիստում, հինգշաբթի, փետրուարի 18-ին, եղան հետեւեալ որոշումները.

1) Փախստական երեխաների համար հիմնած ապաստարաններում մտցնել միատեսակ հաշուապահութիւն և կենտրոնացնել Կ. Հ. Բ. Ընկերութեան գրասենեակում. միևնոյն ապաստարաններում մտցնել միատեսակ կարգ ապրուստի, կրթութեան և դաստիարակութեան։ Այս խնդիրները մշակելու համար ընտրուեցին երկու մասնաժողով.

2) Ուսուցչական միութեանը տալ 1,600 ռ. փախստական երեխաների դպրոցների ուսուցիչներին ռոճիկ.

3) Փախստականների արհեստանոցներին տալ՝ ա) 1,500 ռ. ոսկերիչների արհեստանոցին և բ) 1,000 ռ. կանանց արհեստանոցին.

4) Տալ Թիֆլիսում Կանանց Նորաբաց ընկերութեան որբանոցին և հիւանդանոցին 2,000 ռ.։

5) Կազմել նոր մասնաժողով Թիֆլիսի փախստականներին նպաստելու և հրաւիրել գրասենեակի համար գլխաւոր կառավարիչ։

***

Բաշ գիւղ.—Համաձայն Կ. Հ. Բ. ընկերութեան Խորհրդի առաջարկութեան, նոյն Ընկերութեան ճիւղի վարչութիւնը շրջանիս գաղթական որբ երեխաների համար բացել է ապաստարան մասնաւոր վարձուած շինութեան մէջ։ Որբերի թիւը հասել է 30-ի։ Ապաստարանի ծախս հաշուած է երեսուն հոգու համար մի ամսում 364 ռուբլի։ Բացի ապաստարանից, Կ. Հ. Բ. ընկերութեան ճիւղը բացում է դպրոց երթեեկող գաղթական երեխաների համար. դպրոցի նստարանների, գրասեղանների և ապաստարանի մահճակալների ծախսերը յանձն է առել տեղի Կ. Հ. Բ. ընկերութեան վարչութիւնը իւր միջոցներով հայթայթելու, իսկ պակասն ստանալու է Հ. Կ. կոմիտէից։

***

Մի պարոն նուիրեց Կ. Հ. Բ. Ընկ. 300 ռ. յօգուտ փախստականների, չուզելով յայտնել իւր անունը։ Խորհուրդը յայտնում է իւր շնորհակալութիւնը։

***

Պ. Աղէքսանդր Ղորղանեանից ստացուել է 800 ռ. Շամախու թեմի Դիրք գիւղի դպրոցի ներկայ 1915/16 թ. դպրոցական նպաստը, որ առաջուայ 200 ռուբլու հետ անում է 1.000 ռ.։

Պարոնի հաշուով կառուցուած է դպրոցական մի շքեղ շինութիւն, ուր տեղափոխուելու է դպրոցը։

***

ՆՈՐ ՃԻՒՂ

Ուրուտ գիւղ, Կարսի շրջան։

Ուրուտ գիւղի հայ հասարակութիւնը կազմել է ընդհանուր ժողով՝ այդտեղ Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղ և գաղթականական կոմիտէ հաստատելու համար։ Նախագահ ընտրուել է պ. Յակոբ Արծրունեան, քարտուղար՝ Կարապետ Տէր-Գրիգորեան և գանձապահ՝ Հայկ Սերոբեանը։

***

Կարապետ եպիսկոպոսի յաշտատակը յաւերժացնող Թիֆլիսի յանձնաժողովը շնորհակալութեամբ ստացաւ Հին Նախիջևանից Բարձրապատիւ Միօն վարդապետից քառասուն և երկու ռուբլի։

# Քրոնիկոն

Կանանց նոր աշխատանք.— Բաղ. վարչութիւնը որոշել է կանանց ընդունել ծառայութեան որպէս էլեքտրաքարշի կոնտուկտորներ։

***

Տաճկական զօրքերից գրաւած դրօշակներ.— Փառաց Տաճարում ցուցադրուած են Էրզրումից բերուած զինաւարները՝ դրօշակներ, հրացաններ ևայլն... ամենայն օր ռուսաց զօրքի նոր յաղթութիւնները տեսնելու համար հաւաքւում է Փառաց տաճարի առաջ մեծ բազմութիւն։

***

Նոր Թուրքերէն թերթ.— Նահանգապետը թոյլատրել է վերսկսել Թուրքաց երգիծաբանական «Մոլլանասրէդդին» թերթի հրատարակութիւնը։

***

Հայկական Կենտրոնական կոմիտէի թէյարանը «Մի բաժակ թէյ» անուան տակ յունուարի 1-ից մինչև փետրուարի 1-ը ընդհանուր մուտք է ունեցել 4213 ռ. 90 կ., իսկ ծախսը՝ 2545 ռ. 14 կ., զուտ արդիւնք մնում է 1567 ռ. 76 կոպ.

***

Թիֆլիսի իրաւասուների ընտրութիւնը.— Թիֆլիսի իրաւասուների ընտրողների ցուցակը արդէն պատրաստ է և յանձնուած է տպագրութեան. իրաւասուների ընտրութիւնը, ենթադրւում է, կատարուելու է մարտ ամսին։

***

Բագուի ընդհանուր նահանգապետութիւնը.— Բագուի քաղաքի և նաւթահանքային շրջանի համար հաստատուել է ընդհանուր-նահանգապետութիւն և ընդհանուր նահանգապետ նշանակուել է գնդապետ Մարտինովը։

***

Լոնդոնից Անգլիոյ լորդմէրի Հայ փախստականներին նպաստող ընկերութեան նախագահ Վիլիամսը հեռագրում է Հ. Կ. կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանին. «Անգլիոյ պարլամենտի պատգամաւոր Բեկստոնը գալու է Կովկաս փախստականների գործերի համար մարտի 25-ից յետոյ։ Բժիշկները արդէն ուղեւորուեցան Թիֆլիս. ուղարկւում են դեղորայք»։

# Արտաքին տեսութիւն

## ԱՍԿԻՒԹԸ ՀԱՇՏՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

—

Խաղաղութեան հարցը աննկատելի կերպով սկսում է տեղ բռնել միջազգային դիւանագիտութեան սեղանի վրայ։ Այն ժամանակ, երբ զինուորական մեքենագէտները և քիմիկոսները նորանոր միջոցներ են հնարում պատերազմն աւելի «բազմակողմանի» դարձնելու, իսկ զինուորական սպայակոյտներն ու հրամանատարները գիշեր ու ցերեկ կռուի նոր ծրագիրների վրայ են տքնում՝ քաղաքական-հասարակական գործիչները աշխատում են տնազել հակառակորդների ակընկալութիւններն այս պատերազմից և միաժամանակ պարզել այն պայմանները, որոնց իրագործման դէպքում իրենց երկիրները կհամաձայնեն հաշտութիւն կընքել։

Սկզբում այս աշխատանքը կատարւում էր գաղտնի կերպով, դիւանագէտների կաբինէտներում։ Սակայն յետոյ նա դուրս եկաւ լրագրական էջերը։ Անցեալ տարուայ կէսերից ի վեր չէզոք երկիրների մամուլի մէջ երբեմն-երբեմն լոյս են տեսնում «վստահելի աղբիւրներից» բղխած զանազան լուրեր կամ «իրազեկ մարդկանց» հեղինակած յօդուածներ խաղաղութեան մասին։

Վերջին ժամանակներս հաշտութեան վերաբերեալ զրոյցները մամուլից զատ պարլամենտներում ևս արծարծւում են։

Այսպէս անցեալ տարուայ վերջերին և այս տարուայ սկզբներին գերմանական սոցիալիստները երկու անգամ առիթ ընծայեցին պետական քարտուղար Բեթման Ֆոն Հոլվէգին արտայայտուելու հաշտութեան մասին։ Առաջին անգամ Բեթման Ֆոն Հոլվէգը արտայայտուեց այն մտքով, որ Գերմանիան կարող է հաշտութիւն կնքել իր սահմանագիծը երկրի ինքնապաշտպանութեան պահանջների համեմատ շտկելու պայմանով. նշանակւում է հարեւան պետութիւններից որոշ հողամասեր գրաւելու պայման։ Իսկ երկրորդ անգամ նա արտայայտւում է աւելի ընդհանուր ձևով, ասելով, թէ ինքը շատ ուրախ կը լինի, եթէ հակառակորդները հաշտութեան բանակցութիւններ սկսեն։

Այս վերջին յայտարարութեան առթիւ անցեալ շաբաթ անգլիական Համայնքների ժողովում հանդէս եկաւ Ասկւիթը մի ճառով, որին առանձին հետաքրքրութեամբ սպասում էին քաղաքական աշխարհում։ Ասկւիթը երկու պատգամաւորի՝ Սնոուդէնի և նախկին մինիստր Թրեւլյանի հարցապնդման Բեթման Ֆոն Հոլվէգի հաշտութեան յայտարարութեան առթիւ պատասխանում է, որ նախ՝ ինքը չի հաւատում ոչ Բեթման Ֆոն Հոլվէգի և ոչ գերմանական ժողովրդի խաղաղասիրութեանը. առաջինը միայն ընդհանուր, անբովանդակ խօսքերով է արտայայտւում այդ խաղաղասիրութիւնը, առանց կոնկրէտ կերպով ձևակերպելու իր պայմանները, իսկ սոցիալ-դեմոկրատները դեռ շարունակում են անվերապահօրէն միլիարդներ յատկացնել կառավարութեանը՝ պատերազմը վարելու համար։ Այնուհետև նա ասում է, որ դաշնակիցների զինուորական ոյժը այն դրութեան մէջ չէ, որ նրանք ներկայ պայմաններում իրենց հարկադրուած զգան հաշտութեան առաջարկներ անելու. իսկ եթէ Գերմանիան իրօք ցանկանում է այդ հաշտութիւնը՝ թող նա առաջինը հանդէս գայ իր պայմաններով։ Վերջում Ասկւիթը պարզում է իր տեսակէտը. մինչև Բելգիան և Սերբիան չստանան իրենց լիակատար անկախութիւնը, Անգլիան և իր դաշնակիցները զէնքը վայր չեն դնի։

Այս յայտարարութեան մէջ մի քանի ուշադրաւ կէտեր կան։ Նախ այն, որ Ասկւիթը Բելգիայի և Սերբիայի կողքին չէ յիշում Չերնոգորիային. սրանից պէտք է ենթադրել, որ չնայած Նիկոլայ թագաւորի և իր կառավարութեան ինքնարդարացման բազմաթիւ փորձերին՝ Անգլիան և իր դաշնակիցները Չերնոգորիայի վերաբերմունքը դէպի իրենց կոռեկտ չեն համարում և մտադիր են վերջին հաշուեհարդարի ժամանակ այդ ի նկատի առնել։ Այնուհետև՝ ուշադրաւ է պահանջների այն մեղմութիւնը, որ ցոյց է տալիս Անգլիան Գերմանիայի հանդէպ։ Վերջինս հարիւրաւոր միլիարդների վնաս է հասցրել Եւրոպային և միլիոնաւոր մարդկային զոհեր տարել բոլոր երկիրներից, բայց չնայած այս բանին, բաւական է, որ Գերմանիան հաշտութեան առաջարկ անի երաշխաւորելով Բելգիայի ու Սերբիայի անկախութիւնը և Անգլիան, թերևս իր դաշնակիցների հետ միասին, պատրաստ լինի բանակ-

ցութիւնները սկսել։ Եւ մեր մնացին Էլզաս-Լոտարինգիայի, Լեհաստանի, Դարդանէլի և Գերմանական միլիտարիզմը խորտակելու հարցերը, որոնք ներկայ պատերազմի առանցքն էին համարւում մի տարի առաջ։

Ասկվիթի յայտարարութիւնը դաշնակից պետութեանց մէջ անշուշտ շատերին կհիասթափեցնէ, սակայն շատերին էլ կսթափեցնի ապարդիւն երազանքներից։

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐԸ

Բրիտանիոյ պարլամենտական պատուիրակութեան նախագահ լորդ Բրայսը, որ գտնւում է Պարիզում, Էրզրումի առման առթիւ տուել է «Рус. Сл.»-ի թղթակցին. «Հայ ժողովրդի գործը առանձնապէս թանկ է մեզ համար։ Չկայ աշխարհում մի այլ ժողովուրդ, որ տառապած լինի աւելի քան հայերը։ Նրանք զոհ են ոչ միայն կրօնական՝ մոլեռանդութեան, այլ և առանձնապէս սառն, նպատակաւոր ատելութեան այն մի խումբ աւազակների, որոնք կոչւում են օսմանեան կառավարութիւն։ Չեմ երկբայում, որ դաշնակիցները համերաշխ կը լինեն հաշտութիւն կնքելիս, դուրս կորզել դժբաղդ Հայաստանը դահիճների ճանկերից»։

*
* *

«Рѣчь»-ը Էրզրումի գրաւման առթիւ իր մի առաջնորդող յօդուածում ասում է, թէ այսպիսով վերջ է դրւում գերմանացոց ձգտումներին՝ հարուածել Անգլիային Հնդկաստանում և Եգիպտոսում։

«Բացի այդ,—ասում է թերթը,—Էրզրումի գրաւումով մենք կատարեցինք մեր բարոյական պարտքը հայ ազգի հանդէպ։ Մեր աջողութիւնը ամրապնդելուց յետոյ ժամանակ է, որ հաւաքենք հայերի մնացորդները, որոնք գաղթել են Կովկաս և Միջագետք, և վերադարձնենք իրանց հայրենի երկիրը»։

## ՏԱՃԿԱՀԱՅ ԳԵՐԻՆԵՐ

Մասնաւոր մի նամակից տեղեկանում ենք, որ Բերեզովկայի մէջ (Զաբայկալսկիի շրջան) գտնւում են 320-ի մօտ հայ գերիներ, որոնցից մեզ յայտնի են առայժմ հետևեալները.

Նշան Եագճեան—վանեցի, Տիգրան Մուրադեան, (Տաւցեան) Կարճկանի Սորփ գիւղից, Սաֆար Պետրոսեան—Կարճկանի Եղեգիս գիւղից, Մանուկ Դէօրգեան—Կարճկանի Փրխուս գիւղից, Աբրօ Աւետիսեան—Կարճկանի Ուրանց գիւղից, Ղազար Տէր-Յովհաննիսեան—Կարճկանի Եղեգիս գիւղից և Միսօ Կուրանեան—Դաւաշի Հիրիչ գիւղից։ Մանուկ Սահիփանեան, Սարգիս Մարտիրոսեան, Արշակ Արշակունեան, որոնց ծննդավայրը յայտնի չէ։

Սրանց բարեկամներից և ծանօթներից խնդրում ենք, որ նրանց հաղորդեն իւրայինների տեղի և վիճակի մասին։

Իսկ հետագայ գերիներն էլ փնտռում են իրենց հետևեալ ազգականներին և ծանօթներին.

Գասպար Մկրտիչեանն ու Ռուբէն Փահլեւանեանը փնտռում են իրենց գիւղացի (Հայոց-Ձորի Աթանանց) Թովմաս Մանուկեանին։

Սենեքերիմ Յովհաննիսեանը (Հայոց-Ձորի Անդղ) փնտռում է նոյն գիւղացի Եղիազար Աբրահամեանին։

Ղազար Սարգսեանը (Խիզանի Բասա) փնտռում է նոյն գիւղացի Դպլոշ Գասպարեանին։

Մկրտիչ Տէր-Աբգարեանը (Կարճկանի Օղունց) փնտռում է իր մայրն ու եղբայրը՝

Խնդրում ենք բոլոր նրանց, որոնք տեղեկութիւն ունին վերոգրեալների մասին, բարի լինեն տեղեկացնել կամ գերիների հասցէով.—Березовка, Забайкалской обл. և կամ ուղղակի մեզ—Թիֆլիս, Պուշկինսկի պասսաժ, № 25.

# Գեղարուեստ

*
* *

Թող դառնաթախիծ
Իմ սրտիս խորքից
Սլանայ ցասման հուրը մոլեգին.
Թող կում՛ ըմպեմ
Հզօր չարի դէմ,—
Կեանքն էլ իմ աչքում չունի ոչինչ գին։

Ազնիւ տենչանքներ,
Երգում ուխտ ու սէր՝
Ողջ բռնաբարուած այս փուչ աշխարհում.
Ո՛վ սուրբ գաղափար,
Ահա քաջաբար
Թողած խինդ, հաճոյք՝ ես քեզ եմ փարում...

Յ. Պետրոսեան

# Մատենախօսութիւն

## ԳՐԱԽՕՍԱԿԱՆ

«Աւերակներուն մէջ», հեղ. Զապէլ Եսայեան, 1911, Պոլիս։

1909 թուի գարնանը Պոլսի յետադիմական շարժումներից խրախուսուած՝ Կիլիկիոյ տաճիկները որոշեցին կազմակերպել տեղական ջարդեր, որպէսզի բնաջինջ անեն հայերին, կողոպտեն նրանց ինչքը և միաժամանակ տապալած լինեն Օսմանեան սահմանադրութիւնը, որի հաւատարիմ պաշտպանները հայերն էին։ Այդ ժամանակ Ադանայի կուսակալն էր Ջէվատ բէյը՝ մի թուլամորթ արենցի պաշտօնեայ, որի անզօրութիւնից օգտուելով՝ մահմեդականներն ապրիլի սկզբին ի կատար ածեցին իրենց հրէշային ծրագիրը. 30,000 հայեր զոհ գնացին այդ բարբարոսութիւններին, հրդեհուած տների ծուխը երկինք հասաւ, թշուառ արկածեալների վայնասունը աշխարհ լցրեց։

Այդ արիւնոտ դէպքերը նիւթ դարձան Տաճկաստանի ու արտասահմանի մամուլին և մինչև իսկ խորհրդարաններին. այնպէս որ եթէ հաւաքուին այդ խնդրի մասին տպուած բոլոր յօդուածներն ու գրքերը՝ մի ամբողջ գրականութիւն կստացուի. հէնց միայն հայերէն լոյս են տեսել հետևեալ ուշադրաւ հատորները.

«Կիլիկեան արհաւիրքը», պատկերազարդ, հեղ. Սուրէն Պարթևեան, 1910, Պոլիս։ «Ամիս մը ի Կիլիկիա», պատկերազարդ, հեղ. Արշակուհի Թէօդիկ, 1910, Պոլիս։ «Ադանայի կեանքը», հեղ. Յակոբ Թէրզեան, 1909, Պոլիս։

«Կիլիկիոյ աղէտը», պատկերազարդ, հինգ հատոր, հեղ. Յակոբ Թէրզեան, 1912, Պոլիս։ «Աւերակներուն մէջ», հեղ. Զապէլ Եսայեան, 1911, Պոլիս։

Առանց յիշատակելու նման այլ հրատարակութիւնները ևս, նկատենք, որ այդ գրքերից ամենաուշագրաւներն են վերջին երկու աշխատութիւնները յատկապէս, որոնք սակայն միմեանցից տարբերւում են իրենց բնոյթով։ Յակոբ Թէրզեանի բազմահատոր երկը մի թանկագին պատմական գիրք է, որի մէջ խնամքով զետեղուած են Կիլիկիոյ աղէտի պատմութիւնը լուսաբանող բոլոր վկայութիւններն ու փաստաթղթերը, արհաւիրքի ծագումը, ընթացքը, վախճանն ու հետևանքը՝ թուերով, ցուցակներով, միամի, տեղնուտեղը արձանագրուած, յականէ անուանէ. մինչև ան-

բական բառեր, որով երկը բնաւ էլ իր ժողովրդական բնոյթը կորցրած չէր լինի. օրինակ, *ե ա վ ր ո ւ մ* բառի տեղը ինչու չասել զուակս կամ որդիս։

Մ. Մատէնճեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի    Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1    Дозволено военнной ценз-